ԻՆՔՆԱՇԱՐԺԻ ԱՐԿԱԾԻ ՄԸ ԶՈՀ ԳԱՑԻՆ Պուքրէշի մէջ, Քարմէն – Սիլվա–Քոսթանցա պողոտային վրայ պ. Գէորգ Ֆէսճեանի 24 ամեայ զաւակը, Եդուարդ, Քոսթանցայէն Յովակիմեան երիտասարդը, իսկ վիրաւորուեցաւ ուրիշ հայ երիտասարդ մը, Մանուկ Ե. Մանուկեան, զաւակը պ. Երուանդ Մանուկեանի: Երկու երիտասարդները կիրակի մեկնած էին Քոսթանցա հարսանիքի մը ներկայ ըլլալու, եւ անկէ պտոյտի համար գացեր էին Քարմէն–Սիլվա: Մահացու արկածը պատահած է առտուան դէմ՝ անոնց Քոսթանցա վերադարձի պահուն: Ռումէն թերթերը կը գրեն թէ ինքնաշարժը կը վարէր Եդուարդ՝ ժամական 140 քիլոմէթր արագութեամբ:

ԹՐՔԱԿԱՆ ՆՈՐ ԴԵՍՊԱՆԸ, Պէհիճ Էրքէն, Փարիզ հասնելով ընդունուեցաւ սովորական արարողութեամբ:

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՀԵԾԵԼԱԶՕՐՔԻ համար ձիեր կը գնուին Իրլանտայի մէջ: Բազմաթիւ գերման վաճառականներ Տըպլին գացած են այս առթիւ:

## Ազգ. վիճակահանութեան պարգեւները

Ազգ. Պարգեւախաղի 14րդ շարքին վիճակահանութիւնը տեղի ունեցաւ չարաթ օր, Օրանժի մէջ: Հինգ միլիոնի մեծ պարգեւը շահեցաւ 1,268,389 թիւը:

Հետեւեալ երեք թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 1,000,000 փրանք. — 0.081.310, 1.052.960, 1.097.678.

Հետեւեալ չորս թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 500.000 փրանք. — 1.303.956, 1.362.608, 0.057.058, 0.314.602:

Հետեւեալ տասը թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 200.000 փրանք. — 1.492.935, 0.072.946, 0.418.870, 0.593.126, 0,021.231, 0.478.859, 1.076.643, 1.121.170, 0.425.237, 1.074.380.

89.670 վերջացող թիւերը շահեցան 100.000 փրանք, 84.951ով վերջացող թիւերը շահեցան 50.000 փրանք, 22.200ով վերջացող թիւերը շահեցան 50.000 փրանք, 0.936ով վերջացող թիւերը շահեցան 20.000 փրանք, 323ով վերջացող թիւերը շահեցան 5000 փրանք, 30ով վերջացող թիւերը շահեցան 1000 փր., 9ով վերջացողները շահեցան 220 փրանք եւ 0ով վերջացող թիւերը շահեցան 110 փրանք:











Տէր եւ Տիկին Մաղաքեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Գրիգոր Խաչիկեան եւ զաւակունք (Պոլիս), Այրի Տիկին Անտիոքէ Գալֆաեան (Ռումանիա), Տէր եւ Տիկին Գասպարեան եւ զաւակունք (Ռումանիա), ցաւով սրտի կը ծանուցանեն իրենց սիրելի մօր, մեծմօր, քրոջ եւ մօրաքրոջ՝

## ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԱԶՆԻՒ ՄԱՂ ՋԱՃԵԱՆԻ

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ օգոստ. 11ին Hôpital Cochinի մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ Զորեքշաբթի, 16 օգոստոս, առաւօտեան ժամը 9ին Պանիէօ–Քօմիւնի գերեզմանատունը:

Հաւաքավայր ժամը ճիշդ 9ին Պանիէօ–Քօմիւնի գերեզմանատան մուտքի դրան առջեւ:

Մասնաւոր Մահազդ դրկուած չըլլալով կը խնդրուի ներկայիս իբր այդ նկատել:

## Միօտնի հանգանակութեան ցանկը

Փոքրիկներ Յարութիւն եւ Արաքսի Գաղանճեաններ 80 հատ կէս փրանք. 40 փրանք (իրենց գանձանակին դրամը), Գրիգոր Գաղանճեան, Կարպիս Ճիվէլէքեան, Հայկազ Մանուկեան, Սարգիս Գօչեան, Ոմն, Սերոբ Մանուկեան, Աբրահամ Վարդեվանեան, Արմենակ Պետեան, Հմայեակ Կամկամեան, Կարապետ Մելքոն Կէրմիրլեան 100ական փրանք, Անդրանիկ Վարդանեան, Ստեփան Պալեան, Յարութիւն Ֆանկիւլեան, Յովսէփ Ռէիզեան, Յակոբ Ֆէրմանճեան, Աւետիս Սրապեան, Հայրապետ Շիրինեան, Աւետիս Կիրակոսեան, Գէորգ Ալիքսանեան, Յովհաննէս Սարաֆեան, Խաչիկ Ճիվէլէկեան, Արամ Էմիրզաեան, Գրիգոր Թունտաեան, Վասիլ Խերոյեան՝ 50ական փրանք, Տիկ. Գօթանեան Մարիամ՝ 30, Գէորգ Բարատեան՝ 25, Շմաւոն Գասպարեան, Սահակ Թոռումեան, Ոմն, Սերոբ Ներկիզեան, Օննիկ Ալեանաքեան, Ռուբէն Զաքարեան 20ական փրանք, Գէորգ Գօլանճեան, Կարապետ Տէմիրճեան, Նիկողոսեան, Եօժէն Փիրիմեան, Եղիա Բաթրնաեան, Յարէթ Խօրիկեան, Սանդուխտ Թօրունեան, Համբար Ներսէսեան, Երանուհի Թունտաեան՝ 10ական փրանք, Աւետիս Խերոյեան եւ Փանոս Թունտաեան 11ական փրանք (գանձանակի դրամը), Թէլլալեան, Անտոն Մարտիրոսեան, Գարլօ, Գէորգ Մինասեան՝ 5ական փրանք, Տիկին Ménier 3 փրանք, գումար 2100 փրանք, (Տես Յառաջ 12 օգոստոս).

## Պիյանկուրի հանգանակութեան ցանկը

Օ. Քէշէեան, Յ. Մինասեան, Հ. Հանտալեան, Ա. Պաղտիկեան, Վ. Պետուքեան, Ս. Թորոսեան, Կ. Քէշիշեան, Վ. Նարկիզեան 100ական, Փ. Յովհաննէսեան, Խ. Ամիրխանեան, Մ. Հանտալեան, Օ. Թօթօեան, Ս. Գասպարեան, Ա. Պարոամեան, Փոքրիկն Կ. Շահմիրեան, Ս. Սրվազլեան, Ա. Պաղամեան, Ե. Դանիէլեան, Ժ. Նալպանտեան 50ական, Մ. Խիկիճեան (Սէվր) 40. Ա. Գարուճեան 30. Joseph Dufros, Մ. Տօնականեան 25ական, Յ. Նալպանտեան, Յակոբ, Մ. Պչաղճեան, Մ. Համբարձումեան, Ն. Թաթարեան, Հ. Զալըգեան, Լ. Նիկողոսեան, Ոմն 20ական, Ոմն, Տ. Բարթիկեան 15ական, Մ. Մճէմեան, Ա. Պօյաճեան, Վ. Աւետեան, Գ. Պէրպէրեան, Վ. Սուրեան, Ա. Դանիէլեան (անգործ), Կ. Օղլուեան, Հ. Ա. Թէլլալեան, Գ. Անտոնեան, Յ. Հուն Եանց, Մ. Փափազեան (անգործ), Ս. Պէրպէրեան, Գ. Զամասանեան, Յ. Չիլեան, Օհաննէսեան, Ռ. Տէր Թովմաեան, Մ. Տօրումեան 10ական, Ս. Խաչատուրեան, Ստեփանիտես 5ական: Գումար 1840: (Տես Յառաջ 12 Օգոստ.):

## Հայ շարժավարներու հանգանակութիւնը

Ա. Եազըճեան 100, Ս. Շաղուկեան, Խ. Չէյպէկեան, Պ. Սարկաւագեան, Վ. Թէրզեան, Յ. Գասպարեան, Գ. Անանիկեան 50ական, Լեւոն 30. Պ. Պետրոսեան, Գ. Գորգճեան, Պ. Սիմոնեան, Մ. Ստեփանեան, Յ. Սէտէճեան, Հ. Սամուէլեան, Գ. Տիլէեան, Յ. Շահմիրեան, Մ. Էմինեան, Ջաղացպանեան, Կ. Տօնիկեան, Զ. Մանուկեան, Վ. Պետրոսեան, Ոմն 20ական, Ոմն, Ն. Կարապետեան, Ն. Ճիվանեան, Գ. Սարեան, Մ. Սվազլեան, Զ. Միրիճեան, Կարպիս 10ական, Թ. Մուքոֆեան, Ժ. Տէր Ղազարեան, Վ. Խաչատուրեան, Յ. Բարիկեան, Յ. Իզմիրլեան, Մ. Ժամկոչեան, Խ. Ինճէեան 5ական, Ոմն, Գ. Չօ (յոյն), Էպքնազի Վիքթօր (հրեայ), Ոմն (Թուրք), Գ. Սվաճեան 2ական: Գումար 825: (Տես Յառաջ 12 Օգոստոս: Այս Միութիւնը նախապէս ալ 500 փր. նուիրած էր իր անդամներուն: Հանգանակութիւնը կատարուած է իր անդամներուն մէջ):

## Սամուէլ Մուրատեան վարժարան, Սեւր

Մխիթարեան Հայրերու Սեւրի Մուրատեան վարժարանի 1939—1940 դպրոցական տարեշրջանը կը սկսի յառաջիկայ Հոկտ. 1ին:

Վարժարանը կ'ընդունի գիշերօթիկ, կէս գիշերօթիկ եւ ցերեկօթիկ աշակերտներ:

Արձանագրութիւններու համար դիմել վարժարանի տեսչութեան Direction du Collège Arménien Samuel Moorat, 26, rue Troyon, Sèvres (S. & O.).

Ընդունելութեան օրերն են երկուշաբթի ժամը 15էն 18 եւ հինգշաբթի ժամը 15էն 18:





















Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme .. Paris (13)

